# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

5 ՅՈՒՆԻՍ 1975


## ԶՈՒԱՐԹ ԷՋԵՐ՝ ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿԷՆ

Երջանկայիշատակ ու մեծ ազգասէր Խրիմեան Հայրիկ, իր բազում բարեմասնութիւններուն առընթեր ունէր նաեւ զուարթախոհ խառնուածք մը։ Գիտէր իր խօսակցները կատակախառն ոճով մը համեմել։ Բարի եղածին չափ կծու կերպով պատասխանելն ալ գիտէր։ Մեր նպատակն է այսօր Հայրիկը դիտել իբր սրամիտ ու պատրաստաբան մէկը։

Վեհափառ Հայրիկ Կալիցինի պալատը երթալով գայլի մը մորթը կը տեսնէ դահլիճին մէջ եւ կը սկսի գովել զայն։

— Խնդրեմ, վեհափառ տէր, ընդունեցէք այս գայլի մորթը իբր նուէր, կ'ըսէ Կալիցին։

— Ես, գառն Աստուծոյ, ի՞նչ ընեմ գայլի մորթը, կ'ըսէ Հայրիկ ժպտագին...։

* * *

Վեհափառ Հայրիկ իմացեր էր՝ որ իր եղբօրորդին՝ Խորէն, սիրահարեր է աղջկան մը։

Քանի մը օրեր յետոյ Վեհափառը երբ աղջկան տանը առջեւէն կ'անցնէր տեսաւ զայն՝ որ դրան առջեւ նստեր դաս կը պատրաստէր։ Առանց այլեւայլի դարձաւ աղջկան եւ հարցուց.

— Աղջիկս, իմացայ որ Խորէնը քեզ կը սիրէ եղեր, ճի՞շդ է, դուն ալ կը սիրե՞ս զինքը։ Ինչպիսի՞ տղայ մըն է Խորէնը։

— Աղջիկը կէս մը յօնքերը պռստած՝ պատասխանեց.

— Ներէ՛ Սրբազան, բայց կովին մէկն է ան, բնաւ չեմ սիրեր...։

Հայրիկ իր սրտնեղութիւնը քմծիծաղի մը ետին թաքցնել ջանալով ըսաւ.

— Աղջիկս, անիկա կով չէ, եզ է։ Կովը դուն ես։

* * *

Օր մը Վեհափառ Հայրիկը կը հարցնէ տղեկի մը.

— Հայրդ ի՞նչ կ'ընէ, Ղուկաս։

— Ձեզ կ'օրհնէ, Վեհափառ Տէր։

Վեհափառը ուսերը թեթեւօրէն թօթուելով, մանկունակ ժպիտով մը կ'ըսէ.

— Տէրտէրը, վարդապետը, եպիսկոպոսը ես կ'օրհնեմ, քու հայրդ ինչպէ՞ս կրնայ օրհնել...

Լակոտը ակնածանքով՝ բայց տիրական շեշտով մը կը շարայարէ.

— Իմ հայրիկս ոչ թէ միայն կաթողիկոսը, այլ Աստուած ալ կ'օրհնէ...

## ԵՐԻՏԱՍԱՐԴ ԿՆՈՋ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԺՈՂՈՎԸ

(Շարունակութիւն Ա. էջէն)

միջեւ իսկական հաւասարութիւն, կիներուն ապահովել լայն մասնակցութիւն, իրենց երկիրներուն եւ ամբողջ մարդկութեան մէջ՝ տնտեսական, ընկերային եւ մշակութային կեանքի մէջ։

Ս. Միութեան Երիտ. Կազմակերպութեանց կոմիտէի նախագահը՝ Կենեաշի Եանայեւ իր ճառին մէջ խօսելէ ետք՝ թէ «Միջազգային Կանանց Տարուան Մարդկայնութիւնն ու ազնիւ ձգտումները սովետ երիտասարդ կանանց եւ ամբողջ Սովետ Երիտասարդ սերունդին սիրելի են», շարունակեց. «Ժամանակակից ընկերութեան մէջ կիները մեծ դեր կը խաղան արտադրութեան մէջ։ Իրենց մասնակցութիւնը՝ խաղաղութեան եւ միջազգային ապահովութեան զօրեղացման գործին, յարանուն կ'աճի»։

«Խորհրդակցական ժողովին լայն ներկայացուցչական բնոյթը ինքնին հաստատականն է Երիտասարդական քաղաքական կազմակերպութիւններուն յարանուն ուշադրութեանը՝ գործելու երիտ. կանանց հետ եւ զանոնք յառաջ հարցելով»։

Հնդկական Երիտ. համաժողովի ներկայացուցիչ Սուբիրա Սեն Կուբբա, որ ժողովին մասնակիցներէն մին էր, շեշտեց, որ այս «Կանանց Միջազգային Տարի»ն կոչ կ'ուղղէ ամրապնդելու եւ զօրեղացնելու՝ մեր մոլորակին երիտասարդութեան կողմէ ըլլալիք ջանքերը։ Կրթութիւնը եւ արհեստակցական մարզումները պարտին լրիւ հասանելի ըլլալ կանանց։ Պետական մանկապարտէզներ եւ մանկապարտէզներ պէտք է որ բացուին ամենուրեք, մայրերուն ի վիճակի դարձնելու դիւրաւ մայրերը գործօն մասնակցութիւն ունենալու, իրենց բնակած երկիրներուն՝ տնտեսական, քաղաքական եւ ընկերային կեանքին մէջ։ «Ընկերվարական երկիրները լաւ օրինակ կրնան հանդիսանալ կանանց հաւասարութեան պայքարին համար», շեշտեց Սեն Կուբբա։ «Հոկտեմբերեան Մեծ Յեղափոխութենէն ասդին, Սովետ Միութեան մէջ ոչ մէկ խտրականութիւն եղած է կանանց հանդէպ։ Քաղաքական եւ տնտեսական իրաւունքներու ոչ մէկ տարբերութիւն կայ այր մարդոց եւ կանանց միջեւ» ըսաւ ան։

Խորհրդակցական ժողովին մասնակիցները համաձայն կարծիք արտայայտեցին, թէ՝ Երիտ. Կանանց յառաջիկայ Համաշխարհային համախմբը պիտի ըլլայ լայն ներկայացուցչական եւ ազատ հանգամանքով։ Ժողովին գլխաւոր նիւթը պիտի ըլլայ. «Երիտ. Կանայք՝ ժամանակակից ընկերութեան մէջ եւ իրենց մասնակցութիւնը՝ կանանց իրաւունքներու, խաղաղութեան, ազգային անկախութեան, զարգացումի եւ ընկերային յառաջդիմութեան պայքարին»։

Խորհրդակցական ժողովը ընդունեց՝ Երիտ. Կանանց Համաշխարհային Ժողովը կայացնել Սովետ Միութեան մէջ, 1975 տարուոյ Հոկտեմբերի առաջին կիսուն։

Ն. Մ. Գ.



### ՅԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Ողբացեալ Յովհաննէս Տեմիրճեանի (Պէյրութ) մահուան տխուր առիթով, Տէր եւ Տիկին ընկեր Գրիգոր Գրիգորեան իրենց ցաւակցութիւնը կը յայտնեն հանգուցեալին ծերունազարդ մօր, իր ընտանեկան պարագաներուն, եւ առ այդ կը նուիրեն. Լ. Ո.

| | |
|---|---|
| «Արարատ»ին | 5 |
| «Ջահակիր»ին | 5 |

### «ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ

Օր. Հերմինէ Պօլաճեանի ընդ Պր. Վաչէ Վարժապետեանի ամուսնութեան բարեբաստիկ առիթով, փոխան շնորհաւորական հեռագիրի, Տէր եւ Տիկին Նուպար Քիւփէլեան (Նիւ Եորք) կը նուիրեն 300 ե. դ.։

Առ ի քաջալերութիւն թերթիս հայրենանուէր եւ ազգանուէր գործունէութեան, Տէր եւ Տիկին Նուպար Քիւփէլեան (Նիւ Եորք) կը նուիրեն 300 ե. դ.։

### ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

(ԵԳԻՊՏԱԿԱՆ ԴԱՀԵԿԱՆՈՎ)

ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻՆ

Տէր եւ Տիկին Նուպար Քիւփէլեան (Նիւ Եորք) շնորհակալութեամբ ստացած են սրահիս «Երեւան» պատի օրացոյցը եւ առ ի քաջալերութիւն կը նուիրեն 300 ե. դ.։

### ՍՏԱՑՈՒԱԾ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

Նիւ Եորքէն ընկեր ԵԶՆԻԿ ՊԷՐՊԷՐԵԱՆ կը նորոգէ իր բաժանորդագրութիւնը, նուիրելով 12 Տոլար։



## ՀՐԱՒԻՐԱԳԻՐ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԺՈՂՈՎԻ

Հայկական Բարեգործական Ընդհանուր Միութեան Կեդրոնական Վարչական Ժողովը, այսու կը հրաւիրէ Միութեան բոլոր իրաւասու անդամները ներկայ գտնուելու՝ 62րդ Ընդհանուր Ժողովին, որ պիտի գումարուի Շաբաթ, 18 Հոկտեմբեր 1975, կ. ա. ժամը 10ին, Առաջնորդարանի Կիւլպէնկեան Մշակութային Կեդրոնի «Գաւուքճեան» Սրահին մէջ, 630 Սեքընտ Էվընիւ, Նիւ Եորք, Ն. Ե. ԱՄՆ։

Ներկայս 62րդ Ընդհ. Ժողովին համար տրուած միակ հրաւիրագիրն է։ Կը խնդրենք հետեւաբար Միութեան յարգոյ իրաւասու անդամներէն, որ անձամբ ժողովին ներկայ ըլլան վերոյիշեալ թուականին եւ կամ ամենէն ուշ՝ մինչեւ 23 Սեպտեմբեր 1975, իրենց փոխանորդագրերը յանձնեն Հ. Բ. Ը. Միութեան Ընդհանուր Տնօրէնին, կամ զանոնք ղրկեն հետեւեալ հասցէին.—

Armenian General Benevolent Union
Central Board of Directors
628 Second Avenue, New York, N. Y. 10016

### ՕՐԱԿԱՐԳ

1.— Ներկայացում եւ վաւերացում 1974 տարեշրջանի ընդհանուր տեղեկագրի։
2.— Ներկայացում եւ վաւերացում 1974 տարեշրջանի ընդհանուր հաշուեցուցութեան։
3.— Մասնակի ընտրութիւն Կեդրոնական Վարչական Ժողովի։
4.— Մասնակի ընտրութիւն Հաշուեքննիչ Յանձնախումբի։
5.— Առաջարկներ եւ թելադրութիւններ։
6.— Դնահատանքի բանաձեւեր։

Ի ԴԻՄԱՑ ԿԵԴՐ. ՎԱՐՉ. ԺՈՂՈՎԻ

Ր. Ք. ԿՐԵԿԸՐԻ, Ատենադպիր — Ա. ՄԱՆՈՒԿԵԱՆ, Ատենապետ

6 Մայիս 1975, Նիւ Եորք, Ն. Ե.

286

